Mirza

Ayri kahananeri krknamusnutean

# ԱՅՐԻ ՔԱՀԱՆԱՆԵՐԻ
## ԿՐԿՆԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ
## ԽՆԴՐԻ ԱՌԹԻՒ

Հեղինակութիւն Միրզայի

ԱԼԷՔՍԱՆԴՐԱՊՕԼ
Տպարան Յակովբ Ղասապեանցի
1907
(35)

# ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Քրիստոնէայ աշխարհի մի յայտնի, քրոնա-[illegible]ան, պատուաւոր դասակարգ, որը ուսուցիչ [illegible], քարոզիչ է, որբ ու այրիների հովանաւորող է, գերդաստանական սխալ հակումները յարթողն ու ուղղողն է, գաղտնապահն է, քրիստոնէութեան յարատեւութիւնը յառաջ մղողն ու պաշտպանողն է, այն էլ մինչեւ իւր մահկանացուն կնքելը։ Որը կենցաղականում ամենայն իրաւամբ, համեմատաբար պիտի աւելի օժտուած—արտօնուած լինէր, քան թէ միւս քրիստոնէայ դասակարգերը՝ գոնէ բնականի վերաբերմամբ։ Սակայն մարդկային խօլ, նեղահոգի, ուրիշներին սարկանելու ցանկութիւնն ու կիրքը կուրացրել է քրիստոնէայ աշխարհի մի մասի մարդկանց

աչքերը տիրանալու տենչով՝ բռնանալու մի ուրիշ նման մասի մարդկանց վերայ՝ պայքար ու արգելք դառնալով, ոչ կենցաղանման, այլ նոյնապաշտօն, պորտաբոյծ, ձրիակերը իշխողն է դարձած աշխատաւոր հովուին՝ խորտակելով նորա բնական իրաւանց ամբողջ կազմն ու շէնքը։ Այդ ականջ ծակող, հոգի շարժող ու վրդովող գործն ու գործունէութիւնը, քրիստոնէայ աշխարհի ամուրի կուսակրօն կոչուած վարդապետական դասակարգըն է, որոնց կենցաղի, բարոյականի ու գործողութեան մասին՝ դեռ դարերից առաջ մինչև մեր օրերը, ամօթահար, զզուելի բուն մարդ արարածին չ'վայելի անէկոսեներով յատուկ գրականութեամբ «ինկվիզիցիայ» լի գենտաններով ու բամբասանքներով են մկրտուած ու մկրտւում են։ Եւ այդ առակուած վոհմակը, հիդրան, ամուսնաւոր քահանայութեան գլխին կաղին է կոտրել նախկին դարերից ցարդ ու շարունակում է կոտրել։

Մեր ներկայ աշխատութիւնը, յանուն զրկուած հայ այրի քահանաների վերամուսնութեան խնդրի մասին է։ Հայաստանեայց Առաքելական ընդհանրական եկեղեցին՝ ազգային եկեղեցի է։ Այդ եկեղեցին միապետական ոգի չ'ունի, ազգային է, դեմոկրատիկ քրիստոնէայ եկեղեցի է։ Բայց ամուրի հոգև-

որականութիւնը այդ չի ճանաչում, նոքա իշխողն ու իշխանաւորն են դարձել, թէ եկեղեցուն, թէ ժողովրդին և թէ խսկապէս քրիստոնէական ուղիղ ոգւով Հայ ժողովրդին հովուող ամուսնաւոր քահանաներին։ Որովհետև ամուրի հոգևորականութիւնը ամուսնաւոր քահանաների միջոցով են շփվում ժողովրդի հետ, հետևապէս նոքա ամեն սուտ ու պատիր միջոցներով էլ ընկճել, ստրկացրել են քահանայական դասը ու նրանց մարդկային իրաւունքները բռնաբարել, որ իշխողը իրենք լինին ու մնան որպէս իշխա-ւորներ։ Իմ այս աշխատութիւնը Հայ ուսնաւոր քահանայութեան իրաւանց ք կանգման երկնէ, որը ես իմ կաշուիս րայ փորձած՝ յանձն առայ աշխարհին յայտնելու, կուսակրօն ատուած, *խաբեբայ ածականի տակ [ծածկուած]*՝ անբարհաւաճ հացկատակների անցեալ ու ներկայ մտացածին, գաղեալ դիվիզը բազմակողմանի կերպով լուսաբանելու, թէ ով են նոքա, ով ենք մենք։ Կուսակրօնութիւն Հայաստանեայց եկեղեցին ունի, թէ ուրիշ գաղտագողի ճանապարհով է եկել մեր մէջ ու տակաւ կապել, արմատներ ձգել։ Ժամանակ է այդ տակաւին արմատը պոկելու, որ մեր նախնական եկեղեցին վերադառնայ V-րդ դարու փառահեղու-

թեան, սրբել ջանանք այդ ախտը մեր եկեղեցուց, որ զուտ ազգայինը մնայ, որ Հայ մնանք ու Հայ մեռնինք։

*Հեղինակ*

---

*Ապօրէն բառի բացատրութիւնը*

Մեր հոգևոր լիդերների բերանում շա-րունակ արծարծւող «Ապօրինի» բառը իրա-ւաբանական տեսակէտով կարելւոյն չափով պիտի լուսաբանենք։ Ապօրինի, նշանակում է օրէնքին ընդդէմ, օրէնքից դուրս, կամ ոչ օրէնքով։ Օրէնք, կամ կանոն ասելով հաս-կացւում է այն դրական միտքը, որը ունէ տիրապետութեան տակ գտնւող ժողովուրդի համար գործադրւում է որպէս կանոն, որպէս օրէնք «ЗАКОНЪ» և արգարև այդ օրէնքի, կանոնի տրամադրութեան ընդդէմ եղող ան-հատները, այսինքն օրէնքի, կանոնի մտաց դէմ հակառակ գործողները տուժում կամ պատժւում են մի ուրիշ դրական օրէնք կա-նոնով, որը սահմանւել է հէնց յիշածս օրէնքի տրամադրութիւնը եղծելու ժամա-նակ, եղծողներին պատժելու, տուժեցնելու համար։ Եւ այն եղծող անհատների օրէն-քին ընդդէմ գործողութիւնները ասւում է ապօրինի գործողութիւն։ Եւ այսպէս մինը միւսի պատճառից ծնւելով առաջ է եկել օրէնսգրքերի հաստափոր հատորներ, գրքեր, երկրագնդի բոլոր մարդաբնակ տեղերում, և այդ օրէնք, կանոն և օրէնսդրութիւն ան-ւանւած ուղղեցոյց մտքերը, առաջացել

գոյացել են մարդկային ազգի ընկերվարական բարեկեցութիւնը վայելչացնելու գեղեցկացնելու, դիւրացնելու դիտաւորութեամբ։ Ժամանակը մարդկային կենցաղից առաջացած հանգամանքներով ստեղծում է օրէնքներ, կանոններ և այդ օրէնք-կանոնները ժամանակի ընթացքում հնանում անպէտքանում են, ու նորից նորերն են յառաջ գալիս, և այսպէս դարերից դար, տարիներից տարի, նոր նոր հասկացողութիւն, նոր սերունդ նոր կարիքներ և նորագոյն օրէնսդրութիւն։ Իսկ հին օրէնսդրութիւնները իրենց հաստահատոր օրէնսգրքերով, որպէս հին մտքերի հասկացողութեան արդիւնք, ծնունդ, մնում են անգործադրելի, նոր սերնդի, նոր մտքի հասկացողութեան և կենցաղավարութեան համար, որպէս անպէտքացած ու անգործադրելի օրէնսդրութիւն։ Մեր հոգևոր լիդերների բերանում արծարծւող «Ապօրինի» բառը բնորոշելու տալտուկը բացատրենք։

Տարւոյս Յուլիս և Օգոստոսի Արարատ ամսաթերթում, քաղուածք յօրագրութեան Սինօդի երես 613 կարդում ենք, 'ի նոյն թիւ, Սինօդն հրամայեաց նախ վաւերական համարել զարարեալ 'ի ձեռն Սահակ քահանայի Ափեանց զ46 պսակս կատարեալս առանց թոյլտւութեան, նաև զ12 պսակս կատարեալս

5-րդ 6-րդ և 7-րդ աստիճանս ազգականութեան։ Երկրորդ, զպսակադիր Սահակ քահանայն վասն կատարելոյ գիշատակեալ անթոյլատրելի պսակացն նաև վասն ապօրինի կնապահութեան դատարեցուցանել 'ի քահանայագործութենէ և առաքել զնա եռամեայ յապաշխարութիւն և տալ զՍահակ քահանայն 'ի դատ մարմնաւոր իշխանութեան և այլն և այլն և այլն։ Եթէ Սահակ քահանայի ձեռքով կատարուած պսակները անթոյլատրելի էին, ինչո՞ւ նոյն Սինօդը հէնց նոյն վճռով, վաւերական է համարում։ Նոյն քահանայի կատարած 58 պսակից 12-ը, 5, 6 և 7-րդ աստիճանս ազգականութեան են։ Սինօդում ուրիշ անդամներ մէջ 5. 6 և 7-րդ աստիճանի նման ազգակցական պսակների խնդիրներ վճռուել են։ Եթէ վճռուել են, այլևս հարկ չ'կայ մի անգամ վճռուածը կրկին վճռել, արդէն այդպիսի վճիռները մտնում են ժամանակակից օրէնսդրական կանոնների շարքը և այնուհետև նման դէպքերը վճռի տակ չեն մտնում, այդ միմիայն Էջմիածնայ Սինօդումն է, որ այդպէս կամայականութիւններ են կատարւում։ Իսկ գալով քահանայի ապօրինի կնապահութեան մասին մեր հոգևոր լիդերների այդ հնացած զէնքը ապօրինի կնապահած միտքը, մինչև երբ պիտի արծարծեն

մեր ինքնագլուխ վեղարաւորները։ Ապօրինի կնապահ, օրէնքին հակառակ կին պահող, այսինքն, եկեղեցւոյ պսակի խորհուրդը չըսիրող, չ'յարգող չ'հնազանդող մինը, առանց պսակուելու կին է պահում, և դա ամենայն իրաւամբ անուանվում, ասվում է ապօրինի կնապահ։ Սակայն այրի քահանան ընդվըզում է պսակի խորհրդին, չի՛ ցանկանում պսակուել և այնպէս անպսակ կին է պահում, թէ մի ուրիշ գիւղական, գործեան հանգոյց կայ մէջ տեղում, որի ծայրերից երկու ձեռքով հոգին 'ի բերան քաշ են ընկած մեր հոգևոր լիդերները դարերից ցարդ, իրենց որոշ տղամարդութիւնը խարջելու աղագաւ. Այն ո՞ր օրէնքն է, որին հայ այրի քահանայք դէմ հակառակ են կանգնած՝ և այսօրէն կնապահ թիւրախել ածականի տակ հալածվում, պատժվում են մեր հոգևոր լիդերներից։ Այն ո՞ր օրէնքովն է, որ հայ այրի քահանաներին՝ ամուրի կուչուած՝ յղփացած վեղարաւորները այսօրէն կնապահ լիշոցաբանութեամբ ցեխոտում, մրոտում, պատուազուրկ են անում։ Եթէ այն օրէնքը Աստուածական կամ Յիսուսաւանդ է թող ցոյց տան աշխարհին բարոյապէս սնանկացած մեր վեղարաւորները։ Իսկ թէ դոցա այդ վարմունքը գիւղական է, ամբարտաւանութեամբ տոգո-

րուն, անքրիստոնէայ մարդախաղաղութիւն, որոնց անմարդասէր գործողութիւնների մասին սրբազան Պօղոս առաքեալը՝ Յիսուս Համբարձումից 28 տարի յետոյ է նախատեսել, ահա ես եմ ցոյց տալիս աշխարհին։ Թուղթ Պօղոսի առաքելոյն առ Տիմոթէոս առաջներրորդ. գլխ. Դ. Այլ Հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ 'ի ժամանակս յետինս, քակտեսցին ոմանք 'ի հաւատոցն և հայեսցին յայսրս մոլորութեան և 'ի վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանից, խաբեալք իւրեանց խղճիւ մտաց։ Որք յարգելուցուն յամուսնանալոյ և մեկնեսցին ի կերակրոց, զոր Աստուած հաստատեաց հաւատացելոց և ալնոցիկ, որք հասեալ իցեն ի ճշմարտութեան վերայ։ Զի ամենայն արարածք Աստուծոյ բարիք են և չիք ինչ ի նոսա խոտան. մանաւանդ որք գոհութեամբ ընդունիցին։ Ահա սրբազան Պօղոս առաքեալի լսած իւր ականջով սուրբ հոգուց այն՝ ինչ որ իրենք իրենց ամուրի անուանող Եպիսկոպոս-Վարդապետները հայ ալրիացած քահանաների գլխին տէր ու տիրապետ դարձած ոտնահարում են նորանց մարդկային արժանապատուութիւնը, անուանելով նորանց ապօրինի կնապահներ և դեռ անամօթաբար պատժում էլ են։

մեր ինքնագլուխ վեղարաւորները։ Ապօրինի կնապահ, օրէնքին հակառակ կին պահող, այսինքն, եկեղեցւոյ պսակի խորհուրդը չըսիրող, չ'յարգող, չ'հնազանդող մինը, առանց պսակուելու կին է պահում, և դա ամենայն իրաւամբ անուանվում, ասվում է ապօրինի կնապահ։ Սակայն այրի քահանան ընդվըզում է պսակի խորհրդին, չի՛ ցանկանում պսակուել և այնպէս անպսակ կի՛ն է պահում, թէ մի ուրիշ դիւական, գորդեան հանգոյց կայ մէջ տեղում, որի ծայրերից երկու ձեռքով հոգին 'ի բերան քարշ են ընկած մեր հոգևոր լիդերները դաբերից ցարդ, իրենց որոշ տղամարդութիւնը խարջելու աղագաւ։ Այն ո՞ր օրէնքն է, որին հայ այրի քահանայք դէմ հակառակ են կանգնած՝ և ապօրէն կնապահ թիւրախել ածականի տակ հալածվում, պատժվում են մեր հոգևոր լիդերներից։ Այն ո՞ր օրէնքովն է, որ հայ այրի քահանաներին՝ ամուրի կոչուած՝ յղփացած վեղարաւորները ապօրէն կնապահ լիշոցաբանութեամբ ցեխոտում, մրոտում, պատուազուրկ են անում։ Եթէ այն օրէնքը Աստուածական կամ Յիսուսական է թող ցոյց տան աշխարհին բարոյապէս սնանկացած մեր վեղարաւորները։ Իսկ թէ դոցա այդ վարմունքը դիւական է, ամբոխականութեամբ տոգո-

րուն, անքրիստոնէայ մարդախողխողութիւն, որոնց անմարդասէր գործողութիւնների մասին սրբազան Պօղոս առաքեալը՝ Յիսուսի Համբարձումից 28 տարի յետոյ է նախատեսել, ահա ես եմ ցոյց տալիս աշխարհին։ Թուղթ Պօղոսի առաքելոյն առ Տիմոթէոս առաջներրորդ. գլխ. Դ. Այլ Հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ 'ի ժամանակս յետինս, քակտեսցին ոմանք 'ի հաւատոցն և հայեսցին յայսըս մոլորութեան և 'ի վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանք, խարեալք իւրեանց խղճիւ մտաց։ Որք յարգելուցուն ամուսնանալոյ և մեկնեսցին ի կերակրոց, զոր Աստուած հաստատեաց հաւատացելոց և այնոցիկ, որք հասեալ իցեն ի ճշմարտութեան վերայ։ Զի ամենայն արարածք Աստուծոյ բարիք են և չիք ինչ ի նոսա խոտան. մանաւանդ որք գոհութեամբ ընդունիցին։ Ահա սրբազան Պօղոս առաքեալի լսած իւր ականջով սուրբ հոգուց այն՝ ինչ որ իրենք իրենց ամուրի անուանող Եպիսկոպոս-Վարդապետները հայ այրիացած քահանաների գլխին տէր ու տիրապետ դարձած ղանահարում են նորանց մարդկային արժանապատւութիւնը, անուանելով նորանց ապօրինի կնապահներ և դեռ անամօթաբար պարծում էլ են։

Դարիս հայ ազգի կուլտուրատնտեսական այրող հարցերից մինը, բարոյական տեսակէտից կարելի է ասել, որդի հայ քահանայական ամուսնակորոյս դասի՝ անել վիճակի բարւոքման խնդիրն է, որ Վեհափառ Հայրապետը Ազգի և եկեղեցւոյ պաշտօնեաների գիտակից մասի հետ մարդավայել ու քրիստոնէական կարեկցութեամբ ցանկանում են լուծել խնդիրը ըստ հարկին արդարացի կերպով։ Հանել այրիացած քահանաներին այն անել, անտանելի ու անբնական դրութիւնից, որոնք իրենց հետ օրինաւոր կերպով շաղկապուած մի մի էակի բնական մահուամբը, չարքաշ դեգերումով, մաշում են իրենց կենաց օրերը, զրկանքի և ամօթահարութեան լափող խստինկների տակ։ Իրենց կեանքի երաշտացած, գարնան, ամռան օրերը անվերջ ախու-վախի արտասուաց հեղեղի մէջ թրջելով։ Այո, ազգի բարոյագէտ մասը հաճ ու հաւան է գտնում, այրիացած քահանաներին ազատել այդ ողբալի դրութիւնից, թոյլ տալով նոցա կրկին օրինաւոր ամուսին ունենալ։ Բառնայով դարերից ցարդ այն թիւրիմաց ու օտարանենդ կանոնը, որ սպրդեցրել են Հայաստանեայց առաքելական, ընդհանրական ազատ եկեղեցւոյ կանոնների շարքում։ Իսկ թէ այրիացած քահանան ու այրիացած

քահանայի կինը, չեն կարող երկրորդ անգամ ամուսնանալ։ Այս կանոնը յետին մտքով տեղաւորեցրել են մեր եկեղեցւոյ կանոնների շարքում, քաղկեդոնի երկրպագուներից, Լատին ոգով սնուած կղերներից նոքա, որոնք յաւակնութիւն են ունեցել, գաղտագողի կերպով, մաս առ մաս, քանդել մեր ազատ եկեղեցւոյ հիմքերի վէմերը։ Հարկաւ այնպիսի ժամանակներում, երբ եկեղեցւոյ հովուապէտներից ոմանք եւս ներքին, կամ արտաքին տրամադրութեամբ, հակումն են ունեցել, եկեղեցին միացնել քաղկեդոնականի այս կամ այն մասի հետ։ Բայց ազգի կողմից զօրեղ դիմադրութեան են հանդիպած։

Պատմութիւնից գիտենք, Լատին եկեղեցւոյ ջանքն ու ճիգը, փայփայանքն ու շոյելը, մեր եկեղեցւոյ հայրապետներին, որ եկեղեցին միացնեն իրենցի հետ։

Իսկ Օրթոդոկս եկեղեցւոյ բռնութիւնները մեզ հետ, դարձեալ նոյն մտքով՝ կարօտ չէ, ոչ փաստի և ոչ ապացուցութեան։ Սակայն, տակաւին գտնւում են մարդիկ, հոգեւորական և աշխարհական դասից, որոնք խոչնդոտ են հանդիսանում յիշեալ փափուկ հարցի լուծման, յենուելով քաղկեդոնականների այն հին նենգաւոր մտքի վրայ, որ

այլիացած Հայ քահանան չի կարող երկրորդ անգամ ամուսնանալ։

Իսկ այդ անհեթեթ, և մեր եկեղեցւոյ ազատ ոգւոյն խորթ և ոչ իւրապատկան կանոնի-էական մասի իմաստն այն է, որ երբ երկրորդ ամուսնութիւնը պոռնկութիւն է նշանակում։ Իսկ ամուրի կղերները առաջին ամուսնութիւնը անգամ պոռնկութիւն համարեցին, հետևելով քաղկեդոնականներին։ Սակայն նկատելի կերպով, մեր եկեղեցւոյ այդ մասի ազատ ինքնուրոյնութիւնը շաղախուել է քաղկեդոնականնին, որից մեր եկեղեցին ու ազգը, դարերից ցարդ խուսափում է ու նզովք կարդում երեք տիեզերական ժողովների տոներին։ Ժամանակը չէ արդեօք, դուրս վանդելու մեր եկեղեցւոյ իրաւաբանական օրէնսգրքից, մերոնցից հիւրընկալուած օտարի այդ թունաշաղախ կանոնը, որ դարերից ցարդ պղծում է, Հայ հոգևորականութեան հոգին։ Գայթակղեցնում է ուղիղ պաշտօնէութեան պաշտօնավարներին, դնելով նոցա առաջ մի այնպիսի անհամբերութիւն յանուն Յիսուսի Քրիստոսի, որին ենթարկւողները կամայ ակամայ, կամ սոդոմայականութեամբ և կամ օնանականութեամբ պիտի յագեցնեն մարդկայինի ամենազգայուն պահանջը, ենթարկուելով բնականի անդառ-

նալի պատժին, այն է խելակորոյս խենթութեան, ջղային մոլեգնութեան. ապուշ յիմարութեան, անդամալուծութեան, կուրութեան և հոգին ու գիտակցութիւնը, անհաստատ, անյոյս, անկամք ու մեղկ դրութեան ենթարկուած, և որպէս կենդանի աւրուականներ մարդկութեանը արատ բերող մի մաս և այս յանուն Յիսուսի Քրիստոսի։ Մի՞թէ Քրիստոսը այդպէս օրէնք—կանոն թողեց իւր հաւատացեալներին, ոչ։ Մարդիկ իրենք այդ անբնական գաղափարը հնարեցին, որի տակ թագնուելով, առ աչօք կապլուն, բայց արտաքուստ ամեհի ցուլեր, որոնց գազանացած կրքից ազատ չէ, ոչ մի մատղաշ արու և ոչ մի մերձաւոր մարի ու ո՛չ մի կենդանի էակ...

Սեռական գործարանի անբնականը գործադրող ամուրի հոգևորական կոչուած բնատեաց, բնաանարգ ինքնամոլներից քանի քանիները բացարձակ հանրախայտառակութեամբ մարդկային մեծապատւութիւնից վայր ընկած, աղբերին հաւասարուած են։ Քանի՜ քանիները իրենց բազմազան՝ գիտութիւններով և բնատուր ընդունակութեամբ, ընկճուած սեռական անյաղթելի պահանջից, դարձել են ու պիտի դառնան մի մի ջղային իտեօտներ, բարկացկոտ, ըմբոստ ու յանդուգն տնաւէրներ, որոնց համար աշխարհում ամեն ինչ

ոչինչ է, ամեն սրբութիւն պիղծ է, բայց և ամեն պղծութիւն սուրբ է։

Քանի քանիները, հէնց մեր օրով սեռականը 'ի չարը գործ դնելով դէպի մատղաշ արուն, ինքը եպիսկոպոս կրօնագէտ—Աստուածաբան գիշերը մատղաշ զոհի հօրեղբօրից Ագուլիսում վիզը կտրուեցաւ։ Այսպիսի մերկացումների ժամանակ՝ թէև գրիչը կանգ առնել չի սիրում, սակայն մարդու արժանապատուութիւնը ու պատկառանքը, կամքի արգելաոյժն են զօրացնում ու գրիչը ձեռքից վայր է ընկնում։ Զգուանքի, անարգանքի ու պարսաւանքի խմբակ կապլունները, կրօնահաւատալեաց հնարովի գիտելեաց խմբագրողները, ամուրիութեան քողի տակ՝ ինչ սոսկութիւններ չեն կատարում։ Մի հարսանիքում մի եկեղեցականի դեռ սարկաւագ ժամանակ, քահանան նորան էշ գիւղացի անուանեց։ Անցաւ ժամանակ, սարկաւագը որ Էջմիածնայ ճեմարանը աւարտող սանիրից էր վեղարաւոր դարձաւ ու քաղաքում պաշտօն ունեցաւ այն քահանայի տանն էլ ամսավճարով հացալից եղաւ... դարձեալ գրիչը սահում է բայց արգելաոյժը իւր դերը կատարեց... թող քահանան միւս կեանքում բողոքէ... անցեալն էանց։ Այդ վեղարաւոր սև կարիճը, իւր հարազատ եղբօր կնոջն էլ լափեց... Էհ ինչ

վնաս կամ յանցանք քանի որ դոքա արտօնուած են միմիայն ընտանեկան մաքուր, սուրբ բարոյականը քակտելու, պղծելու։ Ամուրի Հոգևորականութիւնը, որին Ռուսները «черное духовенство» են անուանում, այսինքն սև Հոգևորականութիւն։ Բայց մօտ ժամանակներում, իրենք իրենց համար մի նոր ածականաւոր անուն տիտղոս են հնարել — վարիչ Հոգևորականութիւն այսինքն քշող-յառաջմղող, կամ առաջնորդող Հոգևորականութիւն։ Ածականը գեղեցիկ է, բայց վայ այն ամբոխին, այն համայնքին, այն ժողովրդին, 'ի վերջոյ այն ազգին, որոնց հոգևորեպէս վարիչները պիտի այսուհետև ևս լինին ամուրի սև Հոգևորականները։ Բացառութիւնները միշտ յարգի են. բայց չէ՞ որ բացառիկները հատ հատ են, և այդ հատերը շատերի մէջ կորչում են «առածը կասէ. մի ծաղկով գարուն չի լինիլ» Սև Հոգևորականութիւնը, քողարկուած Յիսուս Քրիստոսի աշակերտութիւնը մաքուր, գաղափարական անուան տակ, գառան ըզգեստով հօտի մէջ մտած ժամանակ, կ'խնայե՞ն հօտի ծծկեր գառանը, խոյին ու ոչխարին, մինչդեռ իրենք անագորոյն գայլեր են...

Մոսկուայի ու Պետերբուրգի շրջանի Ռուսաց ամուսնաւոր քահանայութիւնը, մօտերում՝ ժողով են գումարել Մոսկուայում

ու վճռել են, միանգամ-ընդ միշտ խեղդել իրենց յարաբերութիւնք ամուրի-սեւ Հոգեւորականութեան հետ, չ'ճանաչել նոցա ոչ մի գերիշխանութիւնը, չ'թողել տալ նոցա մտնելու ժողովրդեան ոչ մի խաւի մէջ, դուրս վռնդել եկեղեցու ասպարէզից այդ մոլի անբարոյականներին ու վերջ» այս լուրը քաղուած է «Русское Слово» լրագրից 14-ն սեպտ. 1907 ամի № 211։ Դեռ այս պետական եկեղեցու Հոգեւորականութիւնը այսպէս, որտեղ տիրող օրինաց գործադրութիւնը աւելի լուրջ է, քան մեզ մօտ, մեր ցեցերի վերաբերմամբ։ Ամուրի վեղարաւորները մի որեւէ պաշտօնում եղած ժամանակ՝ կաշառակերութիւնը, մարդելուզութիւնը, երեսպաշտութիւնը, փառասիրութիւնը, մարդահաճութիւնը, անձնական եսն ու ոխակալութիւնը, վրէժխնդրութիւնն ու ատելութիւնը, մի բոպէ անգամ աչքաթող անելու ընդունակութիւնը եթէ ունենային, այն ժամանակ կարելի էր դոցա գոնէ մի բանի նմանեցնել։ Բայց ինչպէս պահանջելու տեղիք էլ չկայ, քանի որ դոքա բնականը ուրացել են, անբնականը առատօրէն իւրացնելու համար։ Մի հատը ատել են շատերը ունենալու ձեռք բերելու համար. իսկ շատերը ունենալու համար՝ փող է հարկաւոր, փողն էլ արդէն վերև յիշուած պո-

զաւոր ընդունակութիւնները իւրացնելու մէջնէ
որով ամենքը ի մի հաւաքած վարիչ հոգե-
որականութեան անունով են իրենք իրենց
մկրտել։ Աչա սև հոգևորականութեան հաւա-
տամքի փոքրիկ իմաստը, որը զուտ աշխար-
հական բիւրոկրատիայի՝ գաժան վիժուածքի
վիշապն է, իւր տեսակով յանուն կրօնի, յա-
նուն Յիսուս Քրիստոսի։ Ճանաչում ենք Եպիս-
կոպոս, վարդապետներ, որոնք մի մի կին,
զաւակներ ունին, թէև ծածկաբար, բայց
այդպիսինները, թէ իրենց չափաւորութեամբ
և թէ որպէս ընտանիքի հայր դարձած անձ-
նաւորութիւններ, շատ բարձր են կանգնած
գաղափարի աշխարհում, իրենց հոմանիշ վեղա-
րաւորների հետ բաղդատմամբ։ Առաջինները
ճաշակելով վերջինների անբնական ու անբա-
րոյական կացութեան տմարդի, անպատիւ, զեխ
ու քրիստոնէութեանը արատ բերող կացութիւ-
նը, հնազանդեցին բնականին Աստուածականին
ընկերականին ու քրիստոնէականին և կին ունե-
ցան։ Այսօր այդ կին ունեցող Եպիսկոպոսներն
ու վարդապետները, յաչս ժողովրդեան ու ազգի
յարգելի են ու հարազատ՝ քան թէ այն իրենք
իրենց կապլուն ձևացնող ցուլերը։ Թող մեզ
ներուի այսպիսի սուր լեզու գործածելու մա-
սին, քանի որ ժամանակն է արմատախիլ ա-
նելու Աստուածային կարգերը, մարդկային

բնական իրաւունքները դիտաւոր բնութեամբ արգելառիթներին. լինի նա օրէնք, կանոն և կամ կանոնագիր։ Ամուսնութիւն արգիլող կանոնագիրները ներշնչուած են եղել դիւական ոգւով։ Պօղոս առաքեալը այդ յետնորդ, դիւայլուկ հոգևորականների մասին գրում է, առ Տիմօթէոս առաջներրորդ գլխ. դ. Այլ հոգին սուրբ յայտնապէս ասէ թէ ի ժամանակս յետինս, քակտեսցին ոմանք ի հաւատոցն և յարեսցին յայսս մոլորութեան և վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանք, խարեալք իւրեանց խղճիւ մտաց, որք արգելուցուն յամուսնանալոյ և մեկնեսցին 'ի կերակրոց, զոր Աստուած հաստատեաց հաւատացելոց իւրոց և այլն։

Գիտենք-ճանաչում ենք գիտնական վարդապետներ, որոնք կշռելով իրենց անզուգութեան մարդախոշոշ ու նպատակազուրկ կացութիւնը, երգել են սրտի ամենաբուռն թափով, սիրոյ բոցավառ կրակում վառուած սիրահարի շանթացած լեզուով։ Թերթեցէք Ալամտարեանց վարդապետի երգարանը, երգեցէք Նորա Յերկու. ձեռին երկու մոմ, ինձ ընդ առաջ ել 'ի տուն, մի հարցանէր ո՞վ էր նա հրեշտակ, թէ կոյս լուսագեղ։ Այն օրիորդն էր պարկեշտ, հասակն էր յոյժ վայելուչ, ոտիւքն ընդ վարսք քարշ գային, 'ի

գոյն քրքմոյ փայլէին։ Ա՜խ ասացի թմրեցայ, սիրտս սկսաւ դողդողալ, զաշխարհ համայն մոռացայ ի գեղ կուսին ապշեցայ և այլն։ Երգեցէք մի ուրիշ գիտնական վարդապետի սիրահարական աղիողորմ երգը։ Առաւօտեան քաղցր և անոյշ հովերը մերձեալ հնչեն մեղմով թփոցդ քովերը, արդ ծածանին աչաց լցեալ ծովերը, բացուիր բացուիր իմ կարմիր վարդ պատուական։ Քանի ողբամ նոր ի նորոյ խոցոտիմ, զփայլուն գեղդ ի միտ բերեալ բոցոտիմ, յորդ արտասուօք ցայգ և ցերեկ թացոտիմ. բացուիր բացուիր և այլն։ Ձմեռն է անց ես քեզ կարօտ մնացի, այրիմ տապիմ որպէս ի հուր հնոցի. քեզ շատ օրեր ես ի ձեռաց գնացի, բացուիր բացուիր իմ կարմիր վարդ պատուական։ Երգեցէք վերջապէս մի ուրիշ վարդապետի սիրահարական երգը—'Ի ննջմանէդ արքայական զարթիր նազելիդ իմ զարթիր, եհաս նշոյլ արեգական զարթիր նազելիդ իմ զարթիր և այլն։ Սոքա կենդանի բողոք, դառն գանգատանք չե՞ն ողբացած այն էակների, որոնք հանգամանքների բախտամեռ զուգադիպութեամբ, գլորւեցան ամուրի վարդապետութեան լաբիւրինթոսի մէջ սիրահարի բորբոքուած հառաչանք արձակելով, մեռան, կորան աշխարհից, նզովելով կարգն էլ, կանոնն էլ, կրօնաւորութիւնն էլ,

որ այնպիսի իրաւազուրկ բռնութեան ենթարկւեցան՝ աշխարհավայել ու մարդավայել Աստուածապարգև բուսականութիւնից զուրկ ու կարօտ, խղճուկ խղճուկ մեռան կորան։ Վերջապէս գիտենք մեր օրով՝ այնպիսի նշանաւոր Եպիսկոպոսի, «Ջօն վիլիամ Գրէպէրի թարգմանչին» որը սիւնիքում սիրահարուեց մի գեղանի օրիորդի վերայ վարդապետ ժամանակը։ Սիրոյ կրակը խեղճ մարդուն տոչորեց, այրեց, վառեց մոխիր դարձրեց, և նա որ ազգին պիտանի հազուագիւտ անձնաւորութիւններից մինն էր, իւր հոգւոյ աշխարհում փայփայելով իւր գեղանի սիրուհոյն չդիմացաւ երկար ապրելուն, թողեց անժամանակ այս աշխարհը, գնաց հոգևոր աշխարհում գրկելու իւր փնցֆալքին, որի համար բերկրապատառ դեռ կենդանութեան ժամանակ հեւհեւում էր, երբ մտապատկերը նորա առաջ ի ցոյց էր հանում սիրած գեղանիի հոլանի պատկերը։

Դեռ սա մեր գիտցածի ամենաչնչին մասն է ամուրի կարծուած հոգևորականութեան մասին։ Ո՞վ իրաւունք ունի արգելելու զուգաւորութիւնը։ Այն ո՞ր կրօնն է, որ Աստուածային կհամարուի Աստուծոյ սահմանած զուգաւորութիւնը ու օրհնութիւնը արգելելով։ Ո՞չ ապաքէն դիւական մոլորու-

թեամբ ու դաղուած, խանձուած խղճով ա-մուսնութիւնն արգելող կանոնադիրները ու կանոնը, Աստուածային առաջ պիտի նսեմանար այսօր, եթէ մարդիկ լուսամիտ լինէին, եթէ դարւոյս սև հոգևորականութիւնը, «ըստ առաքելոյն Պօղոսի» ներշնչուած չ'լինէր դիւական մոլորութեամբ, ամուսնութիւնն արգելում։

Օտկայն քսաներորդ դարում դարձեալ կեղծ խաւարամտութեամբ, ծածկուած ամուրիութեան կանոնով ընթանանք, թէ մարդկային ազատ իրաւանց շաւղով, որով քրիստոնէութիւնը ու եկեղեցին բարձրագլուխ են կանգնած՝ քան թէ ամօթահար, իրենց խղճով դաղուած ու դիւական մոլորութեամբ մոլիացած ամուրի կեղծ հոգևորականութիւնը։ Յիսուս Քրիստոսի կեղծ ու պատիր աշակերտները նոյն Փրկչի պատուէրը կարդալիս, ինչո՞ւ երեսները դարձնում են դէպի յետ իրենց աղօթարանը։ Մի՛ խցէք ձեր ականջները ամուրի վեղարաւորներ, լսեցէք փրկչին, թէ նորա գոնէ անունով միայն աշակերտ էք համարում ձեզ, լսեցէք։ Շաբաթ վասն մարդոյ եղև և ոչ մարդ վասն շաբաթու։

Յիսուս Քրիստոսի վարդապետութիւնը այս մարմնաւոր աշխարհում մարդկանցից լիովին կատարելութիւն է պահանջում։

Եղերուք կատարեալ և որպէս Հայրն ձեր
երկնաւոր կատարեալ է։ Մի ըստ աչս դա-
տէք, այլ ուղիղ դատաստան արարէք։ Այս
է պահանջում Յիսուս Քրիստոսը իրեն Հա-
ւատացողներից։ Կատարեալ մարդ լինելու
համար մարդուն հարկաւոր է կեանքի բո-
լոր ելևէջներում լինել, որպէս կեանք վայե-
լող էակ։ Նա ոչ մի չափաւոր վայելքից
իրեն զրկելու, կամ ուրիշներից զրկուելու
իրաւունք չպիտի ունենայ, կամ ունենան։
Բնական պահանջներից խուսափող մարդը
դէպի կատարելութիւն տանող ճանապար-
հից շեղւում է։ Բնական պահանջների լրա-
ցումն է, որ կատարելութեան մարդավայել
աստիճանների վերայից կ՚տանի դէպի բարձր
կատարելութիւնը, զարթեցնելով նորա մէջ
ընկերութեան ազնիւ գաղափարը, կարեկցու-
թեան մաքուր իդէալը։ Ո՞վ կարող է ուրա-
նալ, ընտանեաց տէր մարդուն պատահած
դժբախտութեան ժամանակը, նորան կարե-
կից, սրտանց ցաւակից ու մխիթարողները
իրեն նման ընտանեաց տէր մարդիկն են լի-
նում և ոչ ամուրի երիտասարդներ կամ ա-
մուրի հոգևորականներ։ Սիրեսցես զընկեր
քո իբրև զանձն քո։ Փրկչի այս պատուէրի
կատարումը լիովին տեսնուում է ընտանեկան
յարկի տակ՝ բնութեան մեզ պարգևած բո-

լոր վայելքները կատարող իրաւատէր մարդկանց մէջ։ Բայց ինչ՞ նման է անընտանիք եւ հոգեւորականը ու ի՞նչ է նա։ Աչքով դատել մէկին, կնշանակէ սխալւում ենք, իսկ եթէ քննելով ենք վերահասու լինում իրականութեանը և յետոյ՝ այն մասին մեր այոն կամ ոչն ասում, այն ժամանակ կատարելութեամբ արեցինք հարկաւոր գործը։

Քննենք ամուրի կարծուած մի որեւէ վեղարաւորի ներքինը, մտնենք նորա խոպանուցած անբերրի, անպտուղ, ամուլ աշխարհը։ Վա՜հ այս ի՞նչպիսի հակասութիւն է։ Սա կատարելութեան աստիճանների հակառակ կողմից գնում է դէպի անկատարը, դէպի անճշմարիտը, դէպի կորուստը։ Սա բնականի պահանջը ծածկել է կեղծութեան ստութեան թանձր քողի տակ, որ յագուրդ պիտի տայ իւր ամբարած կրքերի, դիտաւորեալ տհաս ձգտումների պասքը յագեցնելու իրեն նման էակներից շատ շատերին ամենաանխիղճ կերպով լափելով։ Որովհետեւ կատարելութեան ճանապարհից ուրանալով շեղուել է, անկատարն է ընտրել պարզ ու որոշ նպատակի համար։

Քննենք մի ուրիշ վեղարաւորի ներքինը, որ իբր աշխարհը ատել է ու վեղար է ծածկել — վասն արքայութեանն Աստուծոյ

ներքինի արարեալ է զինքն։ Վա՜հ մոլի Օնանական, հոգիդ ու միտդ բթացել են, դու մի միջենայ ես դարձել անքաւ ճիւաղների թիւը շատացնելու։ Դու եկեղեցի ես յաճախում միայն յաճախելու համար։ Քեզ անդուրեկան են ինչ որ ուղիղն ու ճշմարիտն է։ Դու յագեցնում ես քեզ խաւար երեւակայութեանդ մեղսալից պատկերացումներով։ Օ՜ խղճուկ արարած, քեզ ո՞վ ներշնչեց, որ այդպէս լինիս, դիւական մոլորութիւնը թէ քո խիղճը. բայց դու խիղճ ունի՞ս, քո խիղճը շաղկապուել է դիւականի հետ ու գլորուել ես կեղծաւորութեան լաբիւրինթոսի մէջ։ Զես կարող դուրս գալ այդ լաբիւրինթոսից։ Ո՛չ։ Այդ լաբիւրենթոսից լոյս աշխարհ ելնելու դուռը կնքել է իւր կնիքով Լատին փափը ու իրեն հաւատարիմ ձագերից-Օրմանեան ու Հացունի պալատչներին ու նմաններին դիւական երդումն ընդունեցրած՝ պահապաններ է կանգնեցրել, դռան բանալիի տեղը ամրացրել է պողովատեայ ցամով, դուռ չունի, պիտի կործանել Լաբիւրինթոսը, որ ուրիշներն էլ այդ դժոխքը գլորուելու անբախտութիւնը չունենան։ Յիսուս Քրիստոսի սրտառուչ, համեղ ու քաղցր վարդապետութեան նոր կեանքի բաժակը դառնիճներով լեղիացրել են դիտաւորեալ մարդիկ, որ խմողը թունաւորուի,

եկեղեցին նսեմանայ, ազգը անհետանայ, միմիայն սև պատմութիւն թողնելով իւր սև հոգևորականութեան սևացած ձեռքով։

Դառնանք այրի քահանաների զրկուած ամուսին ունենալու հարցին։ Այս պարզ ու պահանջելի հարցը, ահա մի քանի տարի է, որ դրուած է հրապարակի վրայ. սակայն առկաւին լուծումն չէ ստանում։ Հայ բիւրոկրատ սև հոգևորականութիւնը, ժանիքները սրած, աչքերը չռած, մագիլները բացած, գայլերի ոռնոցով, Հայաստանեայց եկեղեցւոյ, կանոնների ու աւանդութեանց որպէս նախանձախնդիրներ, միաձայն, միաբերան, գոռում գոչումով արգելում են այրի քահանայից կրկնամուսնութիւնը։ Դեռ գտնուեցան և այնպիսի ուղտեր կլանող ու մժղուկ քամող Եպիսկոպոս ու վարդապետներ, որ ամենաանպատկառ, լպիրշ ձևով Վեհափառ Կաթուղիկոսին յանդիմանել համարձակուեցան, այն էլ գրով, հրապարակախօսի ձևով։ Եւ հոգևորականութեան սև բիւրօկրատիան, իւր սևացած, ածխացած դաժանութիւնից դուրս ժայթքեցրեց մի հոտած կղկղանք, ահա այդ կղկղանքը — այրի քահանաներին վանքեր ուղարկել աւելի լաւ է քան թէ երկրորդ անգամ ամուսնանալու լուծումն տալ։

'Ի դէպ է ասել, ժամանակը մօտ է, որ Հայ ազգի ողջ քահանայութիւնը պահանջելու է, սև հոգևորականութեան այդ ձրիակեր կալուածների խոպան անյայտացումը Հայ եկեղեցւոյ ասպարէզից «բաւական է որքան յղփացաք, փչացրիք, անբարոյականացրիք ազգն ու եկեղեցին, գործն ու օրըութիւնը։ Ամուսնաւոր քահանայութիւնը կ'վարէ, կ'կատարէ, կ'բարեզարդէ ու կ'վայելչացնէ այն ամենը, ինչ որ դարերի ընթացքում սև հոգևորականութիւնը աղտեղելով փչացրել, անդամալոյծ է արել։ Հայ ազգին միմիայն մի կաթուղիկոս է հարկաւոր, մնացեալը հայ ամուսնաւոր քահանայութեանն է պատկանում. տասն և երկու քահանայք եկեղեցւոյ սպասաւորների մեծից մինչև փոքրի ձեռնադրութիւնները կատարելու արտօնութիւնը ի ընէ, սուրբ հոգւոյ ազդմամբ ունին։ Ազգն ու եկեղեցին՝ հայ ամուսնաւոր քահանայութիւնը պիտի պաշտպանէ այսուհետև։

Ազգի ցաւերին ցաւակից, ուրախութեան ուրախակից, նեղութեանը կից և որպէս մի մեծ ընտանիքի անդամ քահանան է և ոչ սև հոգևորականը։ Ներկայիս արժանաւոր վարդապետները պիտի ամուսնանան ժողովուրդ հովուելու համար, անպէտք ու ծեր վարդապետները վանքերում ապրեն մինչև

իրենց մահկանացուն կնքելը, այնուհետև ազգը ոչ մի կարիք չունի ամուրի հոգևորականութիւն ունենալու։

«Բանուկ վանքերի վանահայրերը նոյնպէս ամուսնաւոր քահանայք են լինելու»։

Հայ ամուսնաւոր քահանայութիւնը կըվարէ շատ յաջողակ կերպով իւր ազգին ու եկեղեցւոյ պետին վերաբերող բոլոր գործերը, ոչ այնպէս ինչպէս սև հոգևորականութիւնն է վարում։ Նայեցէք սև հոգևորականութեան գործունէութեան վերայ, զայրոյթից փղձկանք է թափում մարդու սրտից ու բերանից։

Ի՞նչ դրութիւն են ստեղծել մեր եկեղեցւոյ պետերի չորեք շուրջը այդ բիւրոկրատ սև հոգևորականները, քննելու կարիք կա՛յ։ Էջմիածնայ ամենայն Հայոց կաթուղիկոսներին՝ բիւրօկրատ սև հոգևորականութիւնը, իր ինքնակոչ դիրքով, զանազան փափուկ պաշտօններ ձեռք բերելու նպատակով, ինչ փորձանքներ, մատնութիւններ, ամբաստանութիւններ ու հոխկաբազութիւնների չեն դիմել ու դիմում, մտնելով դատախազների ոլորտը... այդպիսի լկտութիւնների համար ստուգութիւն է պէտք։ Ռուսահայերս գոնէ բերանացի գիտենք ամեն մի վեղարաւորի ապըսամբ հոգին ու յանդուգն գործունէութիւնը էսլի ամենայն Հայոց ընտրեալ կաթուղիկոսը։

Այդ ձրիակեր ինքնակոչների որջերը փակելու ժամանակը փութացնելու է, որ աւելի շուտով բարձուին ասպարէզից, քանի որ եղածն էլ չեն կլանել ու ոչնչացրել։ Այդ անբարհաւաճ մարմինը, որ վամպիրների պէս կպել են եկեղեցւոյ ու ազգի կրծքից, պէտք շուտով պոկել ու հրել, որ ազգի բազմաթիւ ամուսնաւոր հոգևորականները—քահանայք առաջագիմեն։ Արժանաւոր քահանայութիւն առաջ գայ, իմաստուն, կրթուած, զարգացած քահանայութիւն ձեռք բերել կարողանայ ազգը, որ վայելչութեամբ կառավարուի եկեղեցին ու ազգը, կրօնն ու հաւատը, որ մեր ազգը ազնուանայ, զտուի բարոյակրօնապէս այլասերուելուց, որը ստեղծել է իւր անարի, շուայտ ձրիակերութեամբ ամուրի սև հոգևորականութիւնը։

Ահա այս ցաւովն են տնքում, գայլի արտասուք թափող բիւրոկրատ սև հոգևորականները, լաւ հասկանալով, որ այլի քահանաների կրկին ամուսնութիւնը մի լայն դուռը կ'բանայ հայ եկեղեցւոյ սէմքում, որտեղից արժանաւոր, ուսումնական, գիտուն, զարգացած անհատներ ներս կ'մտնեն հետզհետէ ու իրեն բիւրոկրատական ռեժիմը մի օր արմատախիլ կ'լինի, գործունէութիւնը անցնելով ամու

նաւոր քահանայութեան ձեռքը ու իրենք սառուցի պէս կ'հալին ու կ'հոսին անհետ կերպով։

Ահա սա է նոցա ժանիքներ սրելու, աչքեր չռելու, հարայ հրոցի պատճառը և ոչ թէ եկեղեցւոյ հնաւանդ սովորութեան կամ կանոնների բարեփոխման նախանձախնդրութիւնը։

Հայ բիւրոկրատ սև հոգևորականութիւնը, հարկաւ իւր մահը ականատես չըլինելու համար, պիտի ամեն անների միջոց գործ դնէ։ Նա թոյն անգամ գործածել չի զլանալ հակառակորդին ոչնչացնելու համար։

Մեր նշանաւոր կաթուղիկոսներից մինը Ն. գոցա անմարդի ձեռքով թունաւորուեց ու մեռաւ։ Ընթերցողին ուղարկում ենք Քընար Հայկական երգարանում, Գիրսաս վերնագրով այլաբանօրէն գրուած ոտանաւորը կարդալու, որտեղ ընթերցողը պարզ կ'տեսնէ, մեծ կաթուղիկոսի թունաւորելու ձևն ու հանգամանօրէն պատմուածքը մի սևահոգի, սև բիւրոկրատ, ամուրի հոգևորական-եպիսկոպոսի ձեռքով, որի անունը ոտանաւորի եղինակը Գիրսաս է անուանում։ Սև բիւրոկրատ հոգևորականութիւնը մատնութեան

դէրում ամենաճարպիկն է։ Նա այդ տմարդի արհեստում, այնքան է առաջ գնացել, որ պատրաստ է ստորին կոճակաւորի ոտքերի ցեխն անգամ լիզել, միայն թէ՝ իւր ախոյեանին խորտակուած տեսնի։ Եւ բիւրօկրատ հոգեւորականութիւնը, մինչեւ վերջին շունչը պիտի կռուէ, արգիլէ, որ հայ եկեղեցին կրթուած, զարգացած, ուսումնական քահանայական դասակարգ չունենայ, Որովհետեւ նոցա հարստանալու ամենալայն միջոցը ազգի, եկեղեցւոյ վզին, անկիրթ անուսում տիրացուների վոհմակներ փաթաթելն է, որ իւրաքանչիւրից պոկում, պլոկում են, այնքան կաշառ փողով, որքանով որ իրենց անյագ ագահութիւնն է յագեցնում ու քահանայք ձեռնադրած խմբերով ուղարկում են ժողովրդին հովուելու թէ հոգին հանելու, իհարկէ հասկանալի է։

Ամեն մի բիւրօկրատ սեւ հոգեւորականի ունեցած տասնեակ հազար, հարիւր հազարները այդ եւ դորա պէս աղբիւրներից է։ Դոցա համար եկեղեցին ու ազգը՝ դրամ ձեռք բերելու այն անմեռ աղբիւրներն, են որոնց առատ եկամուտն ու բերքը չեն փոխել, ոչ խղճի, ոչ կեանքի, ոչ էլ Աստուծոյ հետ։ Բազմանուն հայ հոգեւոր բիւրօկրատիայի որկորը, շարայի որկորի հետ համեմատելով,

Տարան նրանց մոնթերից մինի աշակերտը հազիւ կարող է լինել։ Իսկ ըղջախոհութեան, զեխութեան, շռայլութեան ու կրքերի բազմազան յօրինուածներով գերազանցել են իրենց նախկին ուստաբաշիներից և դեռ մի քանի քայլ էլ անցել են դէպի այն կողմը։ Սև հոգևորականութիւնը ազգի լուսամիտ դասի աչքերին թոզ փչելու միջոցով Էջմիածնում հանրահռչակ ճեմարանը հիմնեց, որ այնտեղից ազգին օրէնի ուսումն առած քահանայացուներ, ուսուցիչներ և վարդապետներ։ Եւ իրան ժամանակից դեռ շատ շուտ, Էջմիածնայ ճեմարանը առեց ազգին աւելի կատարելագործուած, նոր ձևի, նոր յանգի այնպիսի ուսուցիչներ, քահանայացուներ ու վարդապետներ, որոնց մասին քիչը վենք կասենք, շատը թողնելով ժամուլին, իսկ դոցա անկուշտ ու ամեհի վայրագութիւնները վայելելու խեղճ հայ ազգին։ Էջմիածնայ ճեմարանաւարտները, նկատելի կերպով, մի ուղղութիւն ստացած, նոյն ուղղութեամբ էլ դուրս են սողում այդ բարոյապէս փեռեկտուած հիմնարկութիւնից։ Կարծես հարբերաւորը մի կաղապարից են դուրս եկած, բոլորը միակերպ։ Եթէ կախարդական մի հայելի լինէր, որով ճեմարանաւարտներից ամեն մինի հոգեբանութիւնը նշմարուէր, պարզ

կ'տեսնուէր որ այդ աւարտածները, ուրիշ ոչինչ չեն, այլ այն զզուելի սև բիւրօկրատ ամուլի հոգևորականութեան երկունքից վիժուած ճիւաղներ են, որոնք գերազանցում են իրենց վարպետ սևահոգիներին այն մեծ առաւելութեամբ, որ սոքա աւելի սրուած, անզուսպ, ծածկագործ, անկրօն ու անսուրբ են. և սորանք ազգն ու եկեղեցին պիտի կառավարեն ու պաշտպանեն։ Ուրիշ կերպ պրտուղներ Էջմիածնայ ճեմարանը չէր էլ կարող տալ, քանի որ ճեմարանը ըստ հսկողութեամբ սև հոգևորականութեամբ էր և է։

Այրի քահանաների վերամուսնութեան խնդրի լուծումը, կախ է ընկել հին ու նոր սև բիւրօկրատ հոգևորականութեան վզից։ Բայց հարցը այնքան ժամանակակից է, որ իւր ծանրութեամբ կռացրել մինչև գետնին է մօտեցրել դոցա դունչ ու պռունկները։ Որքան թափահարում են, վզից դուրս հանելու այդ իրենց համար ծանր հանգոյցը, այնքան աւելի ծանրանում է բեռը, իսկ եթէ մարդու պէս ըմբռնեն ու խոստովանին, որ քան թէ ծածուկ մինից մինչև տասն կին ունենալ, պոռնկական պղծութեամբ կեանք վարել, աւելի ազնիւը մարդկայինը ու յարգելին այն է, որ մի մարդը միմիայն մի կին

պիտի ունենայ, եկեղեցւոյ օրհնութիւնով, յայտնի ամենքի առաջ։

1906 թուի սեպտեմբերի 12-ին Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետը, շրջաբերական կոնտակով, այրի քահանաների վերամուսնութեան մասին՝ հարցնում է Կոստանդնուպօլսոյ հայ կրօնական ժողովի, Կիլիկիոյ կաթուղիկոսի, Երուսաղեմայ պատրիարքի և Ռուսահայ թեմերի առաջնորդների կարծիքը, բոլոր հայ ժողովրդոց կարծեաց հետ՝ թէ նոքա հաւան են այրի քահանաների վերամուսնութեան խնդրին թէ ոչ։ Սակայն իրան վերապահելով խնդրի վերջնական լուծումը։ Թիւրքիոյ հայ բիւրօկրատ-ամուրի կղերականութիւնը, այնպիսի ըմբռստ բացասականներով մերժած են խնդիրը, որ եթէ ուշի ուշով գննելու լինիք յարգելի ընթերցող, դուք ևս կ'գաք այն համոզման, որ արդարև այդ նեխուած, ամուրի կղերականները շուտով պիտի բառնալ եկեղեցւոյ սապարիզէց։

Որովհետև սև կղերը միշտ կղեր է եղել, կղեր էլ պիտի մնայ. լինի նա Լատին, Հայ, Յոյն-Օրթոդոքս, Յակովբիկ, Ասորի և այլն։ Ամուրի կղերին ոչ հնանալ ունի և ոչ նորոգուել, քանի որ նա մեզ սովոր կենցաղով չէ ապրում։ Նա մարդկային, ընտանե-

կան հարազատ ընկերութիւնից դուրս է ապրում։ Ամուրի կղերին ոչ ուսումը և ոչ բարձր գիտութիւնը չի ընդարմացնում ըմբռնելու այն պարզ ճշմարտութիւնը, որ այր մարդը, առանց կին մարդու, նոյնպէս և կինը առանց այր մարդու ապրելու կենցաղը անբնական է։ Նա չի ուզում ճանաչել այս բնական օրէնքը, քանի որ ինքը, ամուրի կղերը մարտիկն ու պայքարողն է այդ յաւիտենական օրէնքին, հէնց նորա համար, որ իւր ժամանակաւոր, սին գոյութեան, կեղծ ու պատիր փառքի յարատևութիւնը քարշ տալու համար, տէր ու դատաւոր դարձած մնա աշխարհիկ, ամուսնաւոր քահանայութեան գլխին։ Ամուրի կղերը չի ճանաչում այն պարզ, ամեն մի անհատին դիւրըմբռնելի յիշածս ճշմարտութիւնը, այն պատճառով, որ թէ ինքը և իւր նախորդները արհամարհել են արհամարհում են և պիտի արհամարհեն բնական գործը, օրինաւորութեան տեսակէտից; իսկ ապօրէն տեսակէտով ամեն մի վեհարաւոր կղեր, բնական գործի բազմակողմանի մասնագէտն է, բառիս լայն ընդարձակ նշանակութեամբ։ Ամուրի կղերը Պօղոս առաքեալին ձեռքում վահան բռնած, միւս ձեռքով առաքեալի բերանը փակելով անմարդասէր, սխոլիստ, առերես կրօնամօլութեամբ ոտքի տակ տրորում է

դրախտի Աստուածային օրհնութիւնը աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր և տիրեցէք դմայն։ Այն էլէմենտը, որ Աստուածային օրհնութիւնը ոտնատակ տալով արհամարհում ամուսնութիւնը, արգելքի պատրւակ բերելով զանազան մաշտոցագրքերից կանոններ, ու հնադարեան հայրապետական ժողովներից անտաշ, անկոկ օրէնքներ։ Պօղոս առաքեալի բերանը մի ձեռքով փակող, իսկ միւս ձեռքով նոյն առաքեալին ամուրի կղերը որպէս վահան գործածող դիւայլուկը, ինչու է ականջները խցում, նորա յայտնապէս խօսելուն, որը հէնց իրեն, ամուրի կղերին է ասում։ Այլ հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ ի ժամանակս յետինս, քակտեսցին ոմանք ի հաւատոցն և հայեսցին յայս մոլորութեան ի վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանք, խաբեալք իւրեանց խղճիւ մտաց։ Որք արգելուցուն յամուսնանալոյ և մեկնեսցին ի կերակրոց և այլն։ Էլ ինչ մնաց ամուրի կղերին, որը ամուսնաւոր, այրի քահանայից վերամուսնութիւն է արգելում։ Ըստ առաքեալի դիտողութեան, դիւական վարդապետութիւնով մոլորած, ստաբան, կեղծաւոր, դաղուած խղճով պոռնիկ կղերը։ Այսպիսի էլէմենտը դատաւոր լինելու իրաւունք ունի՞ ամուսնա-

ւոր քահանայութեան գլխին։

Միթէ կարելուն կղերը չէ հասկանում նոյն առաքեալի պատուէրը—Եպիսկոպոսին «այժմեան քահանային» պարտ է միոյ կնոջ այր լինել։ Այս վեց բառերի ուղիղ իմաստը որ նշանակում է, մի կնկայ մարդ լինել և ոչ շատ կանանց, մի մարդ, որ մի կին ունենայ և ոչ շատ կանայք։ «Ինչպէս այժմս ամուրի կարգուած կղեր դասակարգը ունին շատ կանայք օրինաւորութիւնից դուրս, ապօրէն ձևով» Պօղոս առաքեալը այս պատուէրը տուեց քրիստոնէայ եկեղեցիների հովիւներին քրիստոսի համբարձումից 28 տարի յետոյ։

Այն ժամակ չկային, ոչ հայրապետական ժողովներ, ոչ մաշտոցագրքեր և ոչ ամուրի կղեր, այլանդակ դասակարգ։ Այն ժամանակ կային ամուսնաւոր եպիսկոպոսներ այժմեան քահանայք, ամուսնաւոր սարկաւագներ, ինչպէս այժմս։ Քրիստոսի ժամանակ և յետոյ բազմակնութիւնը շարունակվում էր աշխարհում, նոյնիսկ քրիստոնէայ դասի մէջ։ Որովհետև բազմակին ընտանիքներում առհասարակ համերաշխութիւն չի կարող լինել, իսկ քրիստոնէութեան ոգին կայանում է բուն համերաշխութեան մէջ, դորա համար էլ Պօղոս առաքեալը բազմա-

կնութեան ժամանակ իւր պատուէրն արձակեց, որ եպիսկոպոսն ու սարկաւագը մի մի կին ունենան։ Աւելացնելով, որ իրենց տան վերայ լաւ վերակացու լինել կարողանան, որ եթէ դոքա իրենց տանը վերակացութիւն անել չկարողանան, ինչպէս կարող են Աստուծոյ տան կառավարիչ լինել։ Այստեղից պարզ երևում է, որ առաքեալը եկեղեցւոյ հովիւներին բազմակնութեան ժամանակ արգելեց բազմակնութիւնը։ Նա չասեց, որ եպիսկոպոսի կամ սարկաւագի կինը մեռնելուց յետոյ այլևս կին չունենան։ Նա կրկնամուսնութիւնը արգելելու մասին ոչ մի խօսք չունի ասած եպիսկոպոսների և սարկաւագների վերաբերմամբ, այդ սատանայական հմտութիւնը 7-րդ դարից ցարդ ամուրի կղեր դասակարգն է ստեղծագործել։ Ընտանեկան տան յարկից դուրս ապրող կղերի հնարագործած արգելքը այրի քահանաների վերամուսնութեան մասին՝ օրինաւոր չէ, դիւական է։

Նոյնպէս և ինքը ամուրի կղեր հոգևորականութիւնը օրինաւոր հոգևորականութիւն չէ, քանի որ նա օրինաւոր ամուսնութեամբ կին չունի, իսկ ապօրէն կերպով իւրաքանչիւրը մի քանի հատ... այնպէս էլ, թէ նախկին դարերում և թէ այժմս էլ նորա հնարովի, ցնդաբանած կանոնները օրինաւոր

չեն կարող լինել ու համարուել։ Բիւրօկրատ կղերը Պօղոս առաքեալի պատուէրը թիւր մեկնաբանելով հանդերձ այրի քահանաներին օրինաւոր ամուսին ունենալուց զրկում է։ Իսկ ինքը կղերը նոյն առաքեալի պատուէրը իւր մասին գետինն է քսում, ոտքի տակ է տալիս, որ ինքը կղերը օրինաւոր կին պիտի ունենայ, բայց նա օրինաւորը չի ճանաչում իւր մասին, նա ապօրէնն է հաւանել, այսինքն փոխանակ մի հատի շատերը ունենալ։ Այդ բաւական չէ արգելք էլ է հանդիսանում խեղճ ու կրակ, այրիացած, զաւակներով ծանրաբեռնուած քահանաներին օրինաւոր ամուսին ունենալ։ Փրկիչը կասէ, ինքեանք ոչ մտանեն արքայութիւն և որք մտանեն արգելուն։ Դարձեալ աւետարանից. Են ներքինիք, որք ի մօրէ ծնան ներքինիք, են ներքինիք որք ի մարդկանէ արարին ներքինիք և են ներքինիք որք վասն արքայութեան Աստուծոյ զանձինս իւրեանց արարին ներքինիք։ Մի իրաւաբանական հարց է առաջ գալիս այստեղ։ Արդեօք, մեր կղեր ամուրի կարծեցեալ հոգևորականութիւնը, այդ երեք տեսակ ներքինիներից ո՞ր տեսակիցն է։ Պատասխանը որոշ ու կարճ է, հազիւ բացառութեամբ կասենք և ոչ մինից։ Ուրեմն, եթէ որ կղեր ամուրի դասակարգը, թողնէր

ցնորուած խելքի դիւական յիմարութիւնը, թող տար ձրիակերութիւնը որ առաւելն է և օրինաւոր ամուսնութեամբ ապրէր, ինչպէս առաքելոց դարից մինչև հինգերրորդ դարն էր, այն ժամանակ նորա մտապատկերն էլ հոգին էլ, խղճմտանքն էլ, աշխարհայեցողութիւնն էլ ուղիղ-ճշմարիտ կ'լինէին, քան թէ դաղտագողի հոմանիների հետ ապրելով, մեղսակրութեանց ու ինչ ինչ խղճահարութեանց մէջ դեգերուելով ամուրի կղեր անունը կրէին։ Թէև նոյն տարուայ դեկտեմբերի Արարատ ամսագրի մէջ՝ երես 821 Երուսաղէմից եկեղեցական մը ստորագրութեամբ հերքել է թիւրքիոյ հայ սև հոգևորականութեան յանդուգն բացասականը, խրատացի ու համոզիչ փաստաբանութեամբ։ Թէև Արարատի նոյն համարում երես 825 քահանաների վերամուսնութիւնը ուսումնասիրութեան վերնագրով պարոն Աւետիս Ա. Սուրէնեան, իմաստալից ու պատմական փաստերով ապացուցել է սև հոգևորականութեան սուտ ու սխալ յանդուգն բացասական պատասխանի մտացածին ու շինծու լինելը։ Թէև արարատի նոյն համարում պարոն Բիւզանդ Քեչեան, մեր վերջին խօսքը-մեր ծրագիրը վերնագրով, երկար ու ձիգ յօդուածով ու բեղուն խորհրդածութեամբ, սուրբ գրոց վկայաբանութեամբ

հերքել է սև հոգևորականների ըմբոստ բռ-ցասականը ամենայն հայոց կաթուղիկոսին ուղ-ղած։ Թէև ռուսահայ լրագրութիւնը և յատուկ Հովիւ շաբաթաթերթը համամիտ գտնուեցան այրի քահանաների վերամուս-նութեան փաստացի կերպով անհրաժեշտու-թեանը և այդ խնդրի փութով լուծուելուն։ Սակայն յամառ սև կղերը ինքն իրեն անսխա-լական է համարում և անդրդուելի կանգնած է իւր բիրտ յամառութեան վերայ։ Նորա պողպատեայ սալից աւելի կարծր երեսին, չի ներգործում ոչ մի բարոյական հարուած։ Նորա սառած, քարացած սրտի ու խղճի վրայ ոչ մի կարեկցական երևոյթ չկայ, քանի որ նորա հոգին ամուլ է բարոյականը պտղա-բերելում։

Քահանաների վերամուսնութեան մա-սին, դոքա եօթներրորդ դարում, իրենց փիր վարպետների ձեռքով կալսած, փթած, քառ-թուացած յարդը, դարմանը քսաներրորդ դա-րումն են քամուն տալիս, էլ դորանց ինչ անուն տալ կարելի է։

Որովհետև ամուսնութիւնը կրկնելի խոր-հուրդ է եկեղեցւոյ, այդ խորհրդից այրիա-ցած քահանաները օգտուելու ըստ քրիստո-նէական ազատ սկզբանց, ոչ մի արգելք չը-կայ։ Բաւական է, որ առաջեալը բարձրա-

ձայն կանչում է,—պատուական է ամուսնութիւն և սուրբ են անկողինք նոցա։ Պօղոս առաքեալի այս բարձրակոչ, գովասանական բառբառի տակ, ջարդ ու փշուր են դառնում, յետին ժամանակներում, դիւական վարդապետութեամբ զանազան Հայրապետներից ու վարդապետներից դրուած այն Հակամարդկային, խորթ կանոնը, թէ այրի քահանային ու քահանայի այրի կնոջը արգելւում է կրկին ամուսնանալ։ Քանի որ այդ կանոնը Աստուածադիր չէ, այլ մի կամ մի քանի Լատին ունիթոռների ոգւով տոգորուած եպիսկոպոսներ ու վարդապետներ են սահմանել, այժմս էլ կարող է միևնոյն սխալը մի շրջաբերական կոնդակով խափանել, որը ժամանակակից, իմաստուն Հայրապետի ծերունազարդ Հայրիկի, սրտին մօտիկ իղձն է, իւր բախտազուրկ զաւակներին մխիթարել, քանի որ ինքն էլ ամուսին է ունեցել և գիտէ ընտանեկան քաղցրութեան երջանկութիւնը։ Որովհետև եկեղեցին, ժողովուրդըն ու կրօնը քահանաներով է յարատևում և ոչ ամուրի կղերներով, ուստի և սև կղերի իրաւունքից դուրս է քահանաների բնական իրաւանց դէմ մաքառելը, պատճառ բերելով՝ այրի քահանայի հոգւոյ փրկութեան գործը։ Այրի քահանաների հոգւոյ փրկու-

թիւնը սև հոգևորականութեան վերակացութեամբ այդ էր պակասը։ Մարմնաւորին արգելք լինողը, հոգւոյ փրկութեան ուղին է յորթում, այս միտքը զուտ լատինական չէ։ Այդ վաղ էր որ այդ այդպէս էր, իսկ այժմ ոչ այդպէս չէ։

Թիւրքիոյ հայ սև հոգևորականութեան ազգի Վեհափառ հայրապետին նենգած բացասականում, մի քանի տեղ շեշտուած է։ Եկեղեցւոյ իրաւաշնորհ հարք, ներշնչուած սուրբ հոգւով կանոնագրել են, որպէս անքակտելի օրէնք եկեղեցւոյ և այլն և այլն։ Այո՛ հնումը մարդկանց այդպէս էիք հաւատացրել և հաւատում էին։ Իսկ այժմս, խելքը գլխին ոչ մի մարդ չի կարող հաւատալ, որ քարին, բնականը արհամարհող, Սոդոմայեցիների Օնանականների, արուագէտ, անասնագէտ Թշուառականների վերայ իջած լինէր հոգին սուրբ ու ներշնչէր, որ մարդկանց բնական իրաւանց բռնաբարումն օրինագծէին։ Հոգին սուրբ երբէք այդպիսիների վերայ չէ իջած և նոքա էլ ս. հոգւով չեն եղել ներշնչուած։ Նոքա ներշնչուած են եղել դիւական ներշնչմամբ, որոնց մասին առաքեալը ասում է, Առ. Տիմոթէոս առաջին դլուխ Դ. Եւ հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ ի ժամանակս յետինս, քակտեսցին ոմանք

ի Հաւատոցն և Հայեացին յայսս մոլորութեան ի վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանաց, խաբեալք իւրեանց խըղճիւ մտաց. որք արգելուցուն յամուսնանալոյ և մեկնեցին ի կերակրոց և այլն և այլն!
Որովհետև դևերը միայն մարդկային բնական իրաւանց հակառակորդներն են, որոնց գայթակղեցնելովը մարդիկ բնականից դէպի անբնականն են յաճախում, ինչպէս ամուրի կոչուած սուտ հոգևորականութիւնը, անաչօք թողնելով մարդկայինէ բնական պատկանելիութիւնը։

Կոստանդնապոլսոյ հայ կրօնական ժողովի լուծիւմ բացատականը Վեհափառին այսպէս է սկսւում։ *Որչափի ինչ խնդիր եւ ձիտմք, ոչ տարբերին կարծիք եւ այլոց մտծաց եւ գլխաւոր անձոնց։* Հայաստանեայց եկեղեցին ուրիշ մեծ ու գլխաւոր Աթոռներ չի ճանաչում բացի Էջմիածնայ մայր Աթոռից։ Օրթոդոքս ու լատին «ըստ Օրմանեանի» գլխաւոր Աթոռների կարծիքը հայ այրի քահանաների վերամուսնութեան հարցում խառնելը նենգաւոր դաւաճանութիւն չէ Կոստանդինապոլսոյ կրօնական ժողովի կողմից, այդպիսի դաւաճան կարծիքներ միմիայն Օրմանեանին կ'հարկաւորին և ոչ Էջմիածնայ Մայր Աթոռին։ Բացասականի առաջին մասը․

որը կարծես խրատ է խօսում ամենայն Հայոց կաթուղիկոսին։ Ահա որ ինչ և որչափ ինչ յեկեղեցւոջ պաշտին և պահպանին եթէ օրէնք կամ կանոն, ոչ նովին կերպարանաւ և ծանրութեամբ են որակեալ։ Է ինչ, որ տէրունեան կամ առաքելական վճռով է հաստատեալ «Երանի՜ այդպէս լինէր» և է որ յետոյ յիշխանութեանց և յիշխանաւորաց եկեղեցւոյ հրամայեալ և սոքին դարձեալ կամ յառաջին դարուց անտի գտանին օրինագրեալ և կամ յետ ժամանակեայ կարգադրեալ և չեն ինչ երկուանք, եթէ ոչ ամենեքին այսօքիկ զնոյն ունին նշանակութիւն յաղագս արտօնութեանց և բացառութեանց, զորս իշխանաւորք եկեղեցւոյ կարին տնօրինել ըստ ներելոյ կամ ըստ պահանջելոյ պարագայից։ Արդ որ ինչ հայի յամուսնական վիճակ պաշտօնէից եկեղեցւոյ առաքելական օրինօք է հրամայեալ, միանգամ միայն մտեալ գոլ նոցա յամուսնութիւն և ոչ աւելի «Ամուսնությունը արգելողներին Պողոս առաքյալը մոլիացած դիվական վարդապետությամբ, ծեգպխսիններին է ասում» յորմէ աստիճանէ և իցեն, որպէս յայտնի և յստակ ցուցանին բանք առաքելոյն Պօղոսի։ Սարկաւագք ասէ լինիցին միոյ կնոջ այր և դարձեալ թէ կացուսցես երիցունս, եթէ ոք անարատ իցէ

միոյ կնոջ այր, և դարձեալ թէ պարտ է եպիսկոպոսին անարատ լինել միոյ կնոջ այր, ա. Տիմօթ. գլ, 12, Տիտոս ա. 6 ա. Տիմ. գլ. 2 բանք արդարև բացայայտք, զի որպիսի և մեկնաբանութիւն կամ լեցի տալ միակին լինելոյ պաշտօնէիցն, միշտ հաստատուն մնասցէ պայման հիմնական, միանգամ միայն մտեալ գոլոյ նոցա յամուսնութիւն և այլն և այլն։

Պատասխանելը պէտք է։ Այն որ յետոյ են օրինադրել եկեղեցւոյ իշխանաւորները, որպէս դրական կանոն, այժմս էլ նոյն իշխանաւորների յաջորդները յամենայն իրաւամբ կարող են փոխել, փոփոխել ըստ պահանջման հարկին և ժամանակին, որովհետև դրական կանոնները ժամանակի հետ հնանալով անպէտքանում են ու գործածութիւնից ընկնում, լինին դոքա թէ քաղաքական և թէ եկեղեցական կանոններ, որովհետև կանոն կամ օրէնքներ մարդկանց համար են սահմանւում և գործադրվում և ոչ թէ մարդիկ կանոնների կամ օրէնքների համար։ Այս պարզ ճշմարտութիւնը բնական է և աշխարհի մարդկանց պահանջելի ու կատարւող իրաւականութիւն, որի առաջ ոչ մի պահպանողական փաստաբանութիւն դիմացկանութիւն չունի, այլ կոչտ ու ըմբոստ դիմադրութիւնը

կմնայ յեղյեղուկ ստահակութիւն, որին միայն կարելի է արհամարհել, ուրպէս յետադէմ մտքերի անպէտք ու անօգուտ շարունակութիւն։

Մարդկային ազգի կենդանի վկայն պատմութիւնն է։ Առաքելոց դարի պատմութիւնը բազմակնութեան և բազմայրութեան բնորոշ կայութեան նկարագիրը լինելով՝ ներկայ եկեղեցու Հարց պատիպատ պատճառաբանութիւնները, դարձեալ Հին Հին գաղերի եկեղեցու իշխանաւորների կամ գիտմամբ, կամ լաւ չըմբռնած մտքերի վերայ պնդում են նոյնը։ Սարկաւագին, երեցներին և եպիսկոպոսներին առաքեալը պատուիրել է, որ միայ կնոջ այր լինին և ոչ շատ կանանց, մի մի կին ունենան և ոչ շատ կանայք, ինչպէս այն ժամանակ մի մարդը շատ կանայք ունէր և մի կինը շատ մարդիկ։ Այս ճշմարտութիւնը իրաւցնելու Համար՝ ընթերցողին ուղարկում ենք պարոն Սինկլէրի «Յոերթաս» գիրքը կարդալու, որտեղ յարգելի Հեղինակը, պարզ որոշ նկարագրում է յայնժամեան Հռովմայեցի մարդկանց և կանանց զեխ կենակցութիւնը, Հէնց այնպէս ինչպէս սուրբ գիրքն է գրում։ Եւ յառաջ քան զաւուրս Նոյի, մարդիկ ուտէին, ըմպէին արք կանայս առնէին և կանայք արանց լինէին։ Իսկ Կոս-

տանդնապօլսոյ կրօնական ժողովը գլխամաք ստում է առաքելոց դարի արք կանայս առնէին և կանայք արանց լինէին։ Առաքելոց դարի հռովմէական տիրապետութեան գեխ ու շուայտ կացութիւնը, ու կանանց ոչ որպէս ամուսիններ, այլ որպէս սեգիխներ գործածելը յայտնի չէ պատմութիւնից։ Առաքեալը որպէս Նորկրօնի քարոզիչ ու պրօպագանդիստ, եթէ ոչ բոլոր նոր քրիստոնէաներին, գոնէ եկեղեցւոյ հովիւներին չպիտի՞ օրինագրէր, որ նոքա մի մի կնկայ մարդ լինէին և ոչ շատ կանանց, որ սեգիխ կենակցութիւնից հեռու մնալով կարողանային ժողովուրդ հովուել։ Ամուսնակորոյս Եպիսկոպոսների ու սարկաւագների վերամուսնութեան մասին՝ առաքեալը ոչ մի տեղ և ոչ մի խօսք չէ ասել արգելելու մտքով։ Այլ ընդհակառակը, առաքեալը ներշնչուած լինելով սուրբ հոգւով, տեսէք ինչ է ասում եպիսկոպոս, երէց ու սարկաւագներին մի մի կին ունենալու պատուէրը արձակելուց յետոյ Տիմոթէոս առաջներրորդի Դ. գլխում, որ Կոստանդնուպօլսոյ կրօնական ժողովի նախագահը իրեն չտեսնելն է ձեւացրել, որը ինչարկէ ձեռնտու էլ չէր կարող լինել իւր խմբագրելի ստաբան բացատականին։ Ահա, այլ հոգին սուրբը յայտնապէս ասէ, թէ ի ժամա-

Ծակս յմտինս, քակտեսցին ոմանք ի Հաւատոցն և Հայեսցին յայսս մոլորութեան ի վարդապետութիւնս դիւաց, կեղծաւորութեամբ ստաբանք, խարանեալք իւրեանց խղճիւ մտաց։ Որք արգելուցուն յամուսնանալոյ և մեկնեսցին ի կերակրոց, զոր Աստուած հաստատեաց ի վայելել հաւատացելոց և այնոցիկ որք հաստատեալ իցեն ի ճշմարտութեան վերայ։ Զի ամենայն արարածք Աստուծոյ բարի են և չիք ինչ ի նոսա խոտան, մանաւանդ, որք գոհութեամբ ընդունիցին։ Կոստանդնուպոլսոյ պատրիարքի կրօնական ժողովը առաքեալի սուրբ հոգուց լսած այս յանդիմանութիւնը ինչպէս է հասկանում, առնում է արգելք իւր վերայ՝ թէ էլի պատրիպատ թագաւորեանն է դիմելու։ Ամուրի կապլան հոգևորականների համար չէ ասել առաքեալը, որ յետին ժամանակներից յարդ, արգելում են ամուսնանալը։ Այո, յանձնառու եղէք, որ դուք էք առաքեալից նախատեսնուած ամուսնութիւնը արգելող դիւական վարդապետութեամբ խարանեալք ձերովք խղճիւ մտաց։

Ձեր մասին է Փրկիչը ասել, կապեցին բեռինս ծանունս և դժուարակիրս և դիցեն ի վերայ ուսոց մարդկանց, այլ ինքեանք ոչ կամիցին շարժել մատամբ։

Կոստանդնուպոլսոյ կրօնական ժողովում

պատճառաբանած միւս կէտը։ Այրի ընդ այրիս անուանեսցի միոյ առն կին լեալ։ Ա. Տիմոթէոս ե. 9։ Եւ այս ցուցանէ թէ ոչ յերկուս կամ զերիս մի անգամ ունելոյ խօսի առաքեալն, զի եթէ բազմակնութիւն ներեալ էր ի հին օրէնս, այլ ոչ երբէք բազմայրութիւն ամիթէ, ապա ձեզ ինչո՞ւ է ներում» որով և յայտնապէս զերկրորդ ամուսնութենէ այրեաց իմացեալ լինին առաջին բանքըն։ Արդ եթէ առաջ քան զնուիրումն յԱստուածային պաշտօն չէր ներեալ արանց կըրկին ամուսնացեալ գոլ, զիա՞րդ հնար իցէ զկնի նուիրելոյն առնել զայդ և զառաքելականն առ ոչինչ համարել բացայայտ օրինադրութիւն։ Պատասխանել արժէ։ Եթէ առաքեալը այրի նուիրեալների մասին ձեր այդ մտքով օրինադրած լինէր, ինչպէս որ դուք էք յիւրիւրելով փաստաբանել. ապա ինչո՞ւ, Ա. կորնթոս, դ. է, 8. Այսպէս է օրինադրել. այլ ամուրիացն և այրեացն ասեմ. լաւ է նոցա եթէ կայցեն իբրև զիս, ապա թէ ոչ ունիցին ժույժ ամուսնասցին, զի լաւ է ամուսնանալ քան զջեռնուլ, որ յետոյ էլ գովասանական պերճախօսութեամբ ասում է, պատուական է ամուսնութիւն և սուրբ են անկողինք նոցա, իսկ զշնացողս և զպոռնիկս դատեսցէ Աստուած Ա. Եբրայեցիս գ. ժգ, 4.

Սոյնն ինչ կպատասխանէք, կրկին ձեր դաղուած խղճի հին երգերո՞վ։

Առաքելական դարում, նորահաւատ քրիստոնէաները գրեթէ մի մի համայնք էին կազմում, իւրաքանչիւրը իւր տեղում։ Քրիստոնէայ համայնքը պարտաւոր էր պահել, կերակրել ու հագցնել ձրի, այն բոլոր որբ ու այրիներին, որոնք նուիրուում էին նորահաւատ քրիստոնէութեան։ Առաքեալը, այդ ձեւը սահմանեց, որ նորահաւատների թիւը բազմանայ։ Փափուկ սեռը աւելի զգայուն ու նուիրուող է դէպի կրօնը, վերացականը։ Ուստի և դէպի նորաբողբոջ քրիստոնէութիւնը յաճախողներից մեծ մասը կանայք էին հարկաւ, յագեցած հռովմայեցւոց շուայտ ու զեխ կենցաղավարութիւնից, գալիս յարում էին քրիստոնէութեան։ Ժամանակակից բարուց ապականութիւնը այն աստիճանի էր հասել, որ մի մարդը շատ կանայք և մի կինը շատ մարդեր ունէին, այնպէս որ, փափուկ սեռը ասացինք որ որպէս սեզխ էր գործադրվում և ոչ որպէս ամուսին։ Շատ բնական է, որ այդպիսի կենակցութիւնից ծնուած երեխաները մնում էին իրենց մայրերի վզին ու հոգատարութեանը։ Եւ այդպէս կանայք զաւակներով ծանրաբեռնուած ընդունում էին քրիստոնէութիւնը, գուց

Հէնց այն եզակի պատճառով, որ իրենք և իրենց զաւակները կերակրուել կարողանային, քրիստոնէայ Համայնքի պատրաստի սեղանից։ Սակայն այդ Հեշտ էլ չէր Համայնքին, ուստի առաքեալը նոր կանոն մտցրեց Համայնքների մէջ օրինագրելով թէ այրի միմիայն նա կ'Համարուի, ով որ մի մարդ է ունեցել, և այդ նոր դրուած կանոնով քրիստոնէայ Համայնքները ազատուեցան ծանր ծանր ծախքերից, խմբերով այրի կանանց իրենց բազմաթիւ երեխաներով ձրի կերակրելուց և խնամելուց։ Իսկ վերջին անգամն էլ Առաքեալը, խոլառ կրճատեց այրիներին առաջ ցոյց տուած արտօնութիւնը ասելով այրի ընդ այրիս անուանեսցի, որ չիցէ պակաս ի վաթսնամենից՝ միոյ առն կին լեալ։ Առ Տիմօթէոս առաջին գ. ե. 9. ուրեմն առաքեալը քրիստոնէայ Համայնքների բեռը այնքան թեթևացրեց, որ այն ժամանակ, Հազիւ կարելի էր գտնուել մի այնպիսի այրի կին, որ վաթսուն տարեկանից պակաս չլինէր ու մի մարդու կին եղած լինէր, որին պիտի ընդունէին քրիստոնէայ Համայնքի սեղանից կերակրուելու, որը միւս նորաՀաչատներին տնտեսական ծառայութիւնները պիտի կատարէր։ ԱՀա սա է այրի ընդ այրիս Համարեսցինի բովանդակ իմաստը և ոչ

թէ այրիացած եպիսկոպոսների, երեցների ու սարկաւագների վերամուսնութեան մասին ինչպէս Թիւրքահայ Աթոռակալ, Եպիսկոպոս, վարդապետ ու կրօնական ժողովին մասնակցող քահանաներն են յիւրիւրել իրենց բացասական պատասխաններում։

Կոստանդնուպոլսոյ կրօնական ժողովը իւր գլուխն անցած յայտնի սեւահոգիներ, արտաքին ձեւով սրտացաւ հայ եկեղեցւոյ հնաւանդ սովորութիւններին, իսկ ներքին կերպով եկեղեցին հաշմանդամ ու կմախք դարձնող այդ վեղարաւոր սեւ կարիճները, տեսա՞ք ինչպէս են փաստաբանել այն փափուկ հարցը «այրի քահանաների վերամուսնութիւնը» որը պողպատեայ ձողի պէս, տնկուել է դոցա տմարդի աչքերում։ Դրժուար թէ այդ հարցի վերաբերմամբ լինէին աշխարհում այնպիսի թշնամիներ, որպիսին հայ լուսաւորչական եկեղեցւոյ այդ խորտակիչ «իրենց լեզուով վարիչ» սեւ կարիճներն են։ Բաւական չէ, որ ինքը ժողովը իւր ապիկար հոգեբանութեան ցինիկ տրամաբանութիւնը փոխեց. անկրօն, անհաւատ անսանականութեամբ, դեռ գաղտու ծածուկ հրամայողն էլ հանդիսացաւ Կիլիկիոյ կաթուղիկոսին և Երուսաղէմայ պատրիարքին «և Նոքա էլ ազատւած կրօնական ժողովի նախա-

գահի սուլթանական յոխորտանքից, պարեղ պարեցին, այն զուռնայով, որ փչել պիտէր Կոստանդնուպոլսոյ կրօնական ժողովում. ժողովի Նախագահ Լաճին եկեղեցւոյ ապստամբ ձագը—Օրմանեան Եզուիտը, կովկասահայերին յայտնի աւազակ Մանկունին, իրենց արբանեակ Մեսրովբ, Մովսէս, Գրիգորիս, միւս Գրիգորիս Գաբրիէլ և Ղեւոնդ բազմակին հարեմապետներով, սորանց սպասաւորներ— փառամօլ, բայց սնկլիքոր, Սահակ, Կարապետ, Հմայակ, միւս Կարապետ, Միքայէլ և Գրիգոր կեղծ ու պատիր քահանաներով, որոնք ոտ լիզելու, շողոքորթելու, ճակամուտ քաղաքականութեամբ գնացել, բարձրացել են Թիւրքիոյ հայ կենտրոնական կրօնական ժողովի անդամակցական աթոռների վերայ, հարկաւ, ոչ որպէս մի մի ձայնի տէր անձինք, այլ մի մի հլու տիրասէրներ, որ երբ հարկը պահանջէ, հարեմապետների ոտքն ու ձեռքերը լիզեն, միայն թէ իրենք այդ փառքի մէջ մնան։ Սրն փառքամօթով ու անարգանքով լի կացութիւն։ Դուք ճշմարտութեան և արդարութեան դէմ մարտնչող դժողքի պետերի վարձակալ բռբոյասպաններ ամօթ ձեզ։ Ինչո՞ւ լռեցիք ու պապանձուեցիք, երբ գծագրում էին, ջնջեցո՞ւք արդեօք, ի մաշտոցէ ձեռնադրութեան

գլխորագիրն բացայայտ, որ կայ ի սկիզբն կիսասարկաւագութեան, մինչև ցայս վայր կարէ ամուսնանալ, որ զչորս աստիճանսն ունի, իսկ ի հինգերրորդէն և անդր ոչ կարէ։ Երկրորդ ամուսնութիւն այրի քահանայից վեր ի վայր առնէ զառաքելական պատգամս *«այդպիսի պատգամ առաքեալը չունի, այդ ձեզնից է հնարուած»* զտիեզերական օրէնս և այլն և այլն։ Ո՞վ է հեղինակել մաշտոցագիրք ծիսարանը, ոչ ապաքէն ձեզապիսի ապիկար խելայեղներ։ Նոյն ծիսարանի-որին դուք պաշտում էք, եպիսկոպոսի ձեռնադրութեան խորագիրը այսպէս է ասում։ Ձեռնադրուող եպիսկոպոսը, եթէ կին չունի ամուրի է, նզովեալ լինի այն եպիսկոպոսն էլ և այն ժողովուրդն էլ, որի վերայ կուզէ ձեռնադրուել։ Ուրեմն, բոլոր ամուրի կարծուած սև հոգևորականները ըստ մաշտոցագրքի նզովուած են։ Հա ինչպէս կամենում էք այն ձևով էլ խաղում էք, եկեղեցւոյ ասպարիզում, ցաւ, անբուժելի ցաւ դարձած ազգի եկեղեցւոյ գլխին. խիղճ, ամօթ, պատկառանք ու երկիւղ ունի՞ք դուք. քաւ լիցի։

Չէ թէ միայն պիտի ջնջել մաշտոցագրքից ձեր հեգնաբար ակնարկած անհեթեթութիւնը, այլ միանգամայն պիտի արմա-

տապէս բարեփոխել այդ հնացած անպէտքութիւնը։ Ամօթահար է լինում մարդ, երբ թերթում է ձեր պարծանքով յիշած մաշտոցագրքի այն մասը ուր կայ և հաւ օրհնէքը։ Հաւն էլ կօրհնեն։ Հաւօրհնէք սահմանող-կանոնագրող ապիկար, տգէտ վայրենիները-ձեր հարազատ պապերը, ինչո՞ւ չպիտի այրի քահանային օրինաւոր ամուսին ունենալը արգելէին, որոնց անպատկառ յիմարութեանը, այս քսաներրորդ դարում և դուք էք հետևում։

Մենք յանուն հայաստանեայց, առաքելական, ընդհանրական, լուսաւորչեան սուրբ եկեղեցւոյ ազատ ոգւոյ, ի լուր աշխարհի համարձակ յայտարարում ենք, որ ոչ մի արգելք չկայ, հայ այրի քահանային ամուսնանալուն։ Եթէ կարիք կայ, եթէ ստիպուած է, եթէ ժոյժ չունի։ Պսակի խորհուրդը կրկնելի խորհուրդ է, ինչպէս ամեն մի քրիստոնէայ իրաւունք ունի այդ կրկնելի խորհրդից օգտուելու, եկեղեցւոյ օրհնութեան սրբագործութեամբ, նոյնպէս և առաւել ևս քահանան ունի իրաւունք օգտուելու։ Ցետին ժամանակներից, յետին մտքերով աղաւաղուած ոչ մի կանոն ու օրէնք, արժէք չունի զրկուածին կարեկցելու, բաւարարելու բնականի սրբազան գործում։

Ինքնակոչ, պիւական մոլորութեամբ մոլորուած, ամուրի վեղարաւորների, մեր Հայաստանեայց դեմոկրատիկ եկեղեցին կենդրոնացրել էք ձեր եսական ճանկերում, հեռու քաշուեցէք ասպարէզից հեռու։ Դուք անգութ խաբեբաներ, հեռու ձեր քարսրտութիւնով, ասպարէզը ամուսնաւոր քահանայութեանն է պատկանում։ Ձրիակերութիւնը ձեզ անմարդի վայրագութեան է հասցրել, հեռու, դուրս ձեր վեղարներով։ Բաւական է որքան խաբեցիք, ստեցիք, կողոպտեցիք, գողացաք հեռու։ Ձեզ այլեւս ոչ ազգն է ճանաչում, ոչ եկեղեցին եւ ոչ ամուսնաւոր աշխարհիկ քահանայութիւնը հեռու։ Մեր ազգի աչքերը բացուել է, ուղիղ տեսնում է ձեր ոչնչութիւնը ու անպէտք լինելուց բացի եւ ձեր վնասակարութիւնը ազգին եկեղեցուն։ Ձեր կերածը, գողացածը, կողոպտածը ազգի զաւակաց կրթութեանը կը գործածուի, ազգը յառաջ կերթայ։ Դուրս ելէք հեռացէք, քանի որ ձեզ ուժով չեն հեռացրել։ Գնացէք զարկուեցէք քարերին ու ձեր քրտինքով ապրեցէք, որ կարողանաք սովորել, օրինաւորութիւն, ընկերսիրութիւն, բարոյական ընդունակութիւն ձեռք բերել ջանակ։ Այդ մեռելային կեանքը ձեզ քարացրել, կոշտացրել է ձեր հոգւոյ անդաստանը

խոպանացրել է այդ ստահակ ծածկոյթը վեղարը։ Թքեցէք դորա ձևի ու ծածկելու վերայ։ Վայր գլորեցէք ձեր գլխից այդ սատանայական գլխարկը։ Խառնուեցէք ժողովրդեան խաւերին, սիրեցէք մարդավայել կենցաղավարութիւնը և յետոյ կտեսնէք, որ այո՛, Աստուածայինը պաշտելի ու բարի է, իսկ մարդկային ստապատիր հնարագործածը, յանդուգն, խաբուսիկ ու զրկանքներով ծանրաբեռնուած մի անհոգի, անգթասիրտ ու անխիղճ դլութիւն է, ընդդէմ անսայթակ բնութեանը, ընդդէմ Աստուածային արարչագործութեան անդրդուելի կրիտերիումի։

Միրզայ

Մեծ աշխատութեամբ մեր ձեռք բերած ամուրի վեղարաւորների կենսագրականը, ոչ զսպուած, այլ ընդարձակ կերպով կ՚հրատարակենք II գրքոյկով ի լուր ազգի և աշխարհի մօտակայում։

Հեղինակ

# ՎԵՐՋԱԲԱՆ

Գաղափար կազմելու համար թէ ինչ պտուղներ են եղել եկեղեցւոյ իրաւաշնորհ հարք, որոնց վերաբերւոր կուլակների թոռանց թոռները, խիստ պարծանքով ու երանութեամբ յիշում են նոցա սուրբ հոգուց ներշնչուած լինելը կանոն, օրէնք կազմելու ժամանակ։

Ահա մի երկու նմուշ նոցա անկողմնապահ հոգւով կազմած կանոններից։

Շահապիվանու I ժողով 447 թուին.

I յօդուած։ Եթէ մինը եպիսկոպոսներից պղծութեան, կամ պոռնկութեան, կամ ուրիշ վատթարութեան մէջ գտնուի, 1200 դրամ տուգանք տայ իւր աթոռանիստ եկեղեցուն, տուգանքը կարօտեալներին բաժանուի, եպիսկոպոսը իւր աթոռի վերայ մնայ։

II յօդուած։ Եթէ նոյն յանցանքների մէջ գտնուի երէցը քահանան և վկայութեամբ հաստատուի, երիցութեան կարգից զրկուի, 300 դրամ տուգանք տայ, աղքատներին բաժանելու ու դպիրների կարգում մնայ, եթէ նոյն մոլութեան մէջ մնայ զըրկուի նաև դպրութեան կարգից մինչև յուղղութեան գայ և ապաշխարհի և եպիսկոպոսը նորան զղջումը տեսնելով դպիրների կար-

գը մացնի։

III յօդուած։ Եթէ քահանան մեռնի կինը իրաւունք չունի նորից ամուսնանալ. նոյնպէս եթէ կինը մեռնի, քահանան իրաւունք չունի նորից ամուսնանալ։

Ընթերցողը արդէն գաղափար կազմեց, որ էն սկզբից աշխարհիկ քահանաների սատացական ու բնական իրաւանց բռնաբարումն ինչպէս յարատեւել է մինչեւ այսօր մեր ձրիակեր պորտաբոյծ, սուտ կուսակրօն վեղարաւորների ձեռքում, եւ դեռ այսօր էլ, լպիրշ համարձակութեամբ իրենց իրաւունք են համարում աշխարհիկ քահանաներին դատել ու պատժել այդ նոր ձեւի ինկվիզիտորները։

Հեղինակ